Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (27)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Отдел пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 7 (26)

Գինը 1 ռուբլի

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (27)

«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 8 (27)

«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

# ՄԱՅԻՍԻ 1-Ի ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

## (ՆՅՈՒԹԵՐ ԶԵԿՈՒՑՈՂՆԵՐԻ ՀԱՄԱՐ)

Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ պայքարող աշխատավորության մարտական ուժերի ստուգատեսի օրը՝ Մայիսի 1-ը այս տարի տոնվում է հիտլերյան Գերմանիայի դեմ միավորված ազգերի տարած վճռական հաղթանակների պայմաններում։

Ամբողջ ազատասեր մարդկությունը մեծագույն ցնծություն է ապրում։ Հարյուր միլիոնավոր աշխատավորության անողոք պատերազմի հորձանքի մեջ նետող հիտլերյան ավազակային իմպերիալիզմը սովետական հզոր Կարմիր Բանակի և մեր դաշնակիցների բանակների հուժկու հարվածների տակ իր վերջին գարշահոտ շունչն է փչում։

Չորս տարի առաջ, գերմանական ավազակները, արևմտյան Եվրոպայում տարած իրենց հեշտ հաղթանակներով արբեցած, ուխտադրուժ ավազակային հարձակում ձեռնարկեցին սովետական մեծ Միության վրա՝ հույս ունենալով շարքից հանել Սովետական Միությունը և իրենց ավազակային, արյունոտ ռեժիմը հաստատել ամբողջ աշխարհում, նվաճել բոլոր ազատասեր ժողովուրդներին և ստրկացնել նրանց։

Հիտլերյան մարդակեր հորդաները՝ օգտվելով իրենց հարձակման հանկարծակիությունից, զորքերի և տեխնիկայի թվական գերակշռությունից, օգտվելով Եվրոպայում երկրորդ ճակատի բացակայությունից, հսկայական կորուստների գնով ժամանակավորապես զավթեցին մեր տերիտորիայի զգալի մասը, հասան Մոսկվայի տակ, պաշարեցին Լենինգրադը, հասան մինչև Վոլգա, ներխուժեցին հյուսիսային Կովկաս՝ անհաշիվ վիշտ ու տառապանք պատճառելով մեր խաղաղասեր ու ստեղծագործ ժողովրդին։ Թալանի ու արյան ծարավ ֆաշիստները շատ անգամ պարծենկոտությամբ հայտարարում էին ի լուր աշխարհի իրենց մոտալուտ հաղթանակի



մասին, կառուցում էին աշխարհը տիրելու օդային ամրոցներ, վաղօրոք հրճվում իրենց էրզաց նվաճումներով։

Սովետական Միության լայնարձակ տարածություններում՝ Բարենցի ծովից մինչև Սև ծովը ձգվող ռազմաճակատի երկարությամբ օրեց-օր բորբոքվող դաժան ճակատամարտերում վճռվում էր մեր սոցիալիստական հայրենիքի կենաց ու մահու հարցը, ամբողջ աշխարհի առաջադեմ աշխատավոր մարդկության բախտը։ Պատմական մոմենտի լրջությունը խորապես ըմբռնվեց սովետական ժողովրդի կողմից և նա մեկ մարդու պես ոտքի կանգնեց պաշտպանելու հարազատ Հայրենիքը ֆաշիստական հորդաներից։

Սովետական Միությունը երեք տարի շարունակ մեն-մենակ պատերազմ էր մղում ֆաշիստական Գերմանիայի և նրա դաշնակիցների միացյալ ուժերի դեմ և չնայած դրան Գերմանիան ոչ միայն չկարողացավ հաղթել, այլ և Սովետական Միության զինված ուժերի հզոր հարվածների տակ խորտակման եզրին կանգնեց։

Հանճարեղ զորավար Սովետական Միության մարշալ ընկեր Ստալինի առաջնորդությամբ Կարմիր Բանակը՝ վայելե-

լով սովետական ամբողջ ժողովրդի աջակցությունը՝ ակտիվ պաշտպանությունից անցավ հարձակման և, արմատական բեկում առաջ բերեց պատերազմի ընթացքի մեջ։ Մի շարք վճռական ճակատամարտերում Կարմիր Բանակը իր հուժկու հարվածներով ջախջախեց գերմանացիներին, դուրս շպրտեց նրանց մեր հայրենիքի սահմաններից և պատերազմական գործողությունները փոխադրեց Գերմանիայի տերիտորիան։ Կարմիր Բանակը Սովետական Միության ժողովուրդներին փրկեց գերմանա-ֆաշիստական ստրկությունից, պաշտպանեց մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը և օգնեց եվրոպական ժողովուրդներին թոթափելու գերմանական լուծը։

1942 թվի նոյեմբերից Կարմիր Բանակը մարտական նախաձեռնությունը անշեղորեն պահում է իր ձեռքում, անկանգ հարձակում է կատարում և թշնամուն հասցնում հարաճուն՝ մեկը մյուսից ուժգին հարվածներ։

Այդ ժամանակվանից Կարմիր Բանակը հաղթական ուղի անցավ Ստալինգրադից մինչև Վիեննա, Վորոնեժից մինչև Բեռլին,



Կովկասյան նախալեռներից մինչև Հարավսլավյան լեռները։

1944 թ. Կարմիր Բանակի 10 հուժկու հարվածներին միացավ՝ մեր դաշնակիցների հաջող ներխուժումը Ֆրանսիա և ծավալուն պատերազմական գործողությունները, որոնք հիտլերյան Գերմանիային ստիպեցին պատերազմ մղել երկու ճակատում։ Գերմանիան սեղմվեց երկու ճակատի աքցանի մեջ։ Կարմիր Բանակի հարվածների տակ վերջնականապես քայքայվեց հիտլերյան բլոկը, ֆաշիստական Գերմանիան զրկվեց իր դաշնակիցների մեծ մասից։

1944 թ. նոյեմբերի 7-ին ընկեր Ստալինը իր հրամանում ազդարարեց, որ Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների բանակները ելման դիրքեր են գրավել՝ Գերմանիայի կենսական կենտրոնների վրա վճռական հարձակում գործելու համար։

1945 թիվը սկսվեց սովետական զորքերի նոր, պատերազմների պատմության մեջ անօրինակ հարձակմամբ 1.200 կիլոմետր երկարությամբ ռազմաճակատում՝ Բալթիկայից մինչև Կարպատները։

1945 թ. հունվարին Կարմիր Բանակը թշնամուն հասցրեց իր ուժով չգերազանցված հարված։ Նա խորտակեց գերմանացի-

լով սովետական ամբողջ ժողովրդի աջակցությունը՝ ակտիվ պաշտպանությունից անցավ հարձակման և, արմատական բեկում առաջ բերեց պատերազմի ընթացքի մեջ։ Մի շարք վճռական ճակատամարտերում Կարմիր Բանակը իր հուժկու հարվածներով ջախջախեց գերմանացիներին, դուրս շպրտեց նրանց մեր հայրենիքի սահմաններից և պատերազմական գործողությունները փոխադրեց Գերմանիայի տերիտորիան։ Կարմիր Բանակը Սովետական Միության ժողովուրդներին փրկեց գերմանա-ֆաշիստական ստրկությունից, պաշտպանեց մեր հայրենիքի ազատությունն ու անկախությունը և օգնեց եվրոպական ժողովուրդներին թոթափելու գերմանական լուծը։

1942 թվի նոյեմբերից Կարմիր Բանակը մարտական նախաձեռնությունը անշեղորեն պահում է իր ձեռքում, անկանգ հարձակում է կատարում և թշնամուն հասցնում հարաճուն՝ մեկը մյուսից ուժգին հարվածներ։

Այդ ժամանակվանից Կարմիր Բանակը հաղթական ուղի անցավ Ստալինգրադից մինչև Վիեննա, Վորոնեժից մինչև Բեռլին,



Կովկասյան նախալեռներից մինչև Հարավսլավյան լեռները։

1944 թ. Կարմիր Բանակի 10 հուժկու հարվածներին միացավ՝ մեր դաշնակիցների հաջող ներխուժումը Ֆրանսիա և ծավալուն պատերազմական գործողությունները, որոնք հիտլերյան Գերմանիային ստիպեցին պատերազմ մղել երկու ճակատում։ Գերմանիան սեղմվեց երկու ճակատի աքցանի մեջ։ Կարմիր Բանակի հարվածների տակ վերջնականապես քայքայվեց հիտլերյան բլոկը, ֆաշիստական Գերմանիան զրկվեց իր դաշնակիցների մեծ մասից։

1944 թ. նոյեմբերի 7-ին ընկեր Ստալինը իր հրամանում ազդարարեց, որ Կարմիր Բանակը և մեր դաշնակիցների բանակները ելման դիրքեր են գրավել՝ Գերմանիայի կենսական կենտրոնների վրա վճռական հարձակում գործելու համար։

1945 թիվը սկսվեց սովետական զորքերի նոր, պատերազմների պատմության մեջ անօրինակ հարձակմամբ 1.200 կիլոմետր երկարությամբ ռազմաճակատում՝ Բալթիկայից մինչև Կարպատները։

1945 թ. հունվարին Կարմիր Բանակը թշնամուն հասցրեց իր ուժով չգերազանցված հարված։ Նա խորտակեց գերմանացի-

ների մի շարք տարիների ընթացքում կառուցած հզոր պաշտպանությունը և արագ ու հմուտ գործողություններով թշնամուն ետ շպրտեց հեռու դեպի արևմուտք. Հարձակման 40 օրվա ընթացքում առաջ շարժվելով Արևելյան Պրուսիայի սահմաններից մինչև Վիսլայի ստորին հոսանքը՝ 270 կիլոմետր, Վարշավայից հարավ, Վիսլայի պլացդարմից մինչև Օդեր գետի ստորին հոսանքը՝ 570 կիլոմետր, Սանդոմիրի պլացդարմից դեպի գերմանական Սիլեզիայի խորքը՝ 480 կիլոմետր։

Նույն այդ ժամանակամիջոցում մեր զորքերը գերմանացիներին դուրս շպրտեցին 300 քաղաքներից, գրավեցին տանկեր, ինքնաթիռներ, սպառազինություն և ռազմամթերք արտադրող մոտ 100 գործարան, վերցրին ավելի քան 2.400 երկաթուղային կայարան, գրավեցին ավելի քան 15 հազար կիլոմետր երկարությամբ երկաթուղային ցանց։ Այդ կարճ ժամանակամիջոցում Գերմանիան կորցրեց ավելի քան 1 միլիոն 150 հազար զինվոր և սպա, որից գերի 350 հազար, իսկ սպանված առնվազն 800 հազար։

Այդ նույն ժամանակամիջոցում Կարմիր Բանակը ոչնչացրեց ու գրավեց գերմանա-



կան մոտ 3.000 ինքնաթիռ, ավելի քան 4.500 տանկ ու ինքնագնաց հրանոթ և ոչ պակաս քան 12 հազար հրանոթ։

Հայրենական մեծ պատերազմի պատմության մեջ Կարմիր Բանակի 1945 թվի հունվարյան հարձակումը կմտնի որպես ամենավառ էջերից մեկը։ Դա մի փառահեղ վկայություն է մեր մեծ Հայրենիքի վեհության, մեր պետության տնտեսական և ռազմական հզորության, ստալինյան ստրատեգիայի և տակտիկայի հանճարեղության մասին։

Այդ հարձակման նշանակությունը հսկայական է։ Առաջին հերթին նա խափանեց գերմանացիների ձմեռային հարձակումը արևմուտքում, որի նպատակն էր գրավել Բելգիան ու Էլզասը և մեր դաշնակիցների բանակներին հնարավորություն տվեց իրենց հերթին հարձակման անցնելու գերմանացիների դեմ և իրենց հարձակողական գործողությունները՝ արևմուտքում, միացնելու Կարմիր Բանակի հարձակողական գործողություններին՝ արևելքում։

1945 թ. հունվարի 12-ին սկսված Կարմիր Բանակի մեծ հարձակումը շարունակվում է։ Նա տարբերվում է իր չտեսնված մասշտաբներով ու սրընթաց տեմպերով։ Ար-

տասահմանյան անգամ ամենափորձառու ռազմական տեսաբանները ոչ միայն չկարողացան կանխատեսել այսպիսի խորտակիչ հարվածներ, այլ զարմանքով ու հիացմունքով են խոսում այդ մասին։ Նրանք հաշվի առնելով գերմանական տեխնիկայի վերջին խոսքով ստեղծված պաշտպանության հզորությունը և այլ խոչընդոտները, չէին կարողանում երևակայել նման հարձակման հնարավորությունը։ Անգլիական «Մանչեստեր գարդիեն»-ը հունվարի 15-ին գրում էր. «Ռուսական մեծ հարձակումը, որ սկսվել է հունվարի 12-ին, արդեն այժմ փոխել է պատերազմի դեմքը... այդ կռիվների մասշտաբից մարդու շունչ է կտրվում»։ Անգլիական «Նյուս քրոնիկլ»-ը հունվարի 20-ին նշում էր. «...Մարշալ Ստալինի ղեկավարած զորքերը գրահատանկային ուժերի օժանդակությամբ շարժվում են առաջ այնպիսի արագությամբ ու վճռականությամբ, որ չի եղել պատմության մեջ ոչ մի կամպանիայի ժամանակ»։

Ներկա ճակատամարտերում Կարմիր Բանակը ցուցադրում է ամբողջ աշխարհի առաջ ստալինյան ռազմական արվեստի հաղթանակը, սովետական ռազմական



ստրատեգիայի գերազանցությունը գերմանականի նկատմամբ։

Կարմիր Բանակի հարձակողական գործողությունները զարգացան դժվարագույն պայմաններում։ Անցյալ տարվա վերջին գերմանացիները սովետա-գերմանական ռազմաճակատում կենտրոնացրել էին 220 դիվիզիա, նրանք պարբերաբար մեր ռազմաճակատն էին նետում նոր դիվիզիաներ, ինչպես արևմուտքից, այնպես և իրենց ռեզերվներից։ Հիտլերականները կառուցել էին հարյուրավոր կիլոմետր երկարությամբ ձգվող երկարատև պաշտպանության հզոր ամրություններ։ Կարմիր Բանակի ճանապարհը փակում էին բազմաթիվ գետեր, լճեր, լեռներ, անտառներ ու ճահիճներ։ Այնուամենայնիվ այդ բոլորը խորտակվեցին Կարմիր Բանակի հզոր թափի առաջ։

Կարմիր Բանակը ստալինյան հանճարով ղեկավարվելով, իրականացրեց թշնամուն շրջապատելու և ջախջախելու այնպիսի վիթխարի օպերացիաներ, որ երևակայել անգամ հնարավոր չէ։ Այդ մասին են խոսում Տորն, Պոզնան, Շնայդեմյուլ, Արոնսվալդե, Գլոգաու, Բուդապեշտ, Քյոնիգսբերգ, Վիեննա և այլն—քաղաքներ, որոնց անվան հետ են կապված Կարմիր Բանակի կողմից

գերմանական զորքերի շրջապատման ու ջախջախման մեծագույն գործողությունները 1945 թվի ձմեռային կամպանիայի ժամանակաշրջանում: Բոլոր այս «կաթսաներում» արտաքին աշխարհից չեզոքացված, իսկ հետո ոչնչացված կամ գերի են վերցված շատ տասնյակ գերմանական դիվիզիաներ:

Բուդապեշտում շրջապատվեց և ոչնչացվեց թշնամու 200 հազարանոց խմբավորումը: Տուկումսի և Լիբավայի միջև աքցանի մեջ են առնված և ծովին սեղմված ավելի քան 30 գերմանական դիվիզիա, վիթխարի պարկի մեջ ընկավ թշնամու ամբողջ արևելա-պրուսական խմբավորումը և ոչնչացվեց: Բալթիական ծովի ամբողջ ափերով՝ Տուկումսից մինչև Կոլբերգ, Արևելյան Պոմերանիա թշնամին առնվեց «կաթսաների» մեջ և հետզհետե շրջապատման օղակը սեղմվելով իսպառ ջախջախվեց: Թշնամուն չհաջողվեց, չնայած իր բոլոր կատաղի փորձերին, դուրս գալու այդ «կաթսաներից»:

Կարմիր Բանակի զորամասերը ամեն օր մի նոր փայլուն հաղթանակ են տանում: Մարտի 12-ին Բելոռուսական 1-ին ռազմաճակատի զորքերը գրավեցին Բեռլինի



մատույցները փակող գերմանական պաշտպանության հզոր ամրոցը Օդերի վրա՝ Կոստժին (Կյուստրին) քաղաքը:

Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը մարտի 22-ին գերմանական Սիլեզիայում՝ ճեղքելով հակառակորդի պաշտպանությունը Օպպելն քաղաքից հարավ և արևմուտք, շրջապատեցին և ջախջախեցին այնտեղ թշնամու մեծ խմբավորումը և առաջ շարժվելով գրավեցին հարյուրավոր բնակավայրեր: Այդ գործողությունների ընթացքում միայն գերի վերցվեցին ավելի քան 16 հազար հիտլերյան զինվոր ու սպա: Հիանալի հաղթանակ տարավ Կարմիր Բանակը Բուդապեշտից հարավ-արևմուտք: Թշնամին՝ հաշվի առնելով հարավային շրջանների ռազմա-արդյունաբերական խոշոր նշանակությունը, դեպի Ավստրիա, արևմտյան Չեխոսլովակիա և հարավային Գերմանիա տանող ճանապարհի փակուղու վրա հսկայական ուժեր կուտակեց և հակահարձակման անցավ մեր զորքերի դեմ: Թշնամին ոչ մի արդյունքի չհասավ: Մեր զորքերը հաջողությամբ ետ մղելով թշնամու գրոհները, անցան հակահարձակման և

մարտի 24-ին, 100 կիլոմետր առաջ շարժվելով, ջախջախեցին գերմանական 11 տանկային դիվիզիա։ Թշնամին այդ ճակատամարտում մեծ հարված ստացավ. նա միայն սպանված կորցրեց ավելի քան 70 հազար զինվոր ու սպա։

Մարտի 29-ին Բելոռուսական 3-րդ ռազմաճակատի զորքերը ավարտեցին Քյոնիգսբերգից հարավ-արևմուտք շրջապատված գերմանական զորքերի արևելա-պրուսական խմբավորման ջախջախումը։ Գերմանացիները հսկայական կորուստներ կրեցին։ Մարտի 13-ից մինչև 29-ը տեղի ունեցած մարտերի ժամանակ գերմանացիները կորցրին սպանված՝ 80 հազար, գերի՝ ավելի քան 50 հազար զինվոր և սպա։ Մեր զորքերը գրավեցին 605 տանկ և ինքնագնաց հրանոթ ու ավելի քան 3.500 դաշտային հրանոթ։

Մարտի 30-ին ավարտվեց Կարմիր Բանակի ամենափայլուն օպերացիաներից մեկը — Բելոռուսական 2-րդ ռազմաճակատի զորքերը գրոհով վերցրին Բալթիկ ծովի ափին գերմանացիների ռազմա-ծովային առաջնակարգ բազա հանդիսացող Գդանսկ (Դանցիգ) քաղաքը։ Գդանսկ քաղաքի համար մղվող մարտերում Կարմիր



Բանակը գերի վերցրեց 10 հազար գերմանական զինվոր, գրավեց 45 սուզանավ, 140 տանկ և ինքնագնաց հրանոթ և շատ այլ ռազմագույք։ Գդանսկի վրա բարձրացվեց լեհական ռեսպուբլիկայի պետական դրոշը։

Դանցիգը նորից միացավ Լեհաստանին։ Ապրիլի մեկին Ուկրաինական 1-ին ռազմաճակատի զորքերը երկարատև պաշարումից և համառ մարտերից հետո ավարտեցին թշնամու շրջապատված կայազորի լիկվիդացիան և գրավեցին Գլոգաու քաղաքն ու բերդը՝ գերմանացիների պաշտպանության հզոր հանգույցը Օդերի ձախ ափին։ Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերը, հաջողությամբ զարգացնելով հարձակումը Դանուբի երկու ափերով դեպի արևմուտք, անցան Գրոն ու Նիտրա գետերը և ապրիլի 4-ին գրոհով վերցրեցին Սլովակիայի գլխավոր քաղաք՝ Դանուբի վրա գերմանացիների պաշտպանության հզոր հենակետ Բրատիսլավա քաղաքը։

Ապրիլի 8-ին Բելոռուսական 3-րդ ռազմաճակատի զորքերը սկսեցին գրոհը և ապրիլի 9-ին փողոցային համառ մարտերից հետո ավարտեցին գերմանական զորքերի քյոնիգսբերգյան խմբի ջախջախումը, գրավեցին Արևելյան Պրուսիայի բերդ և գլխա-

վոր քաղաք Քյոնիգսբերգը՝ գերմանացիների պաշտպանության ստրատեգիական կարևոր հանգույցը Բալթիկ ծովի ափին։ Գերմանացիների քյոնիգսբերգյան խմբավորումը լիկվիդացնելու համար մղված մարտերի ժամանակ, այսինքն ապրիլի 6-ից մինչև 10-ը, գերի վերցվեց գերմանական ավելի քան 92 հազար զինվոր ու սպա։ Այդ նույն ժամանակամիջոցում գերմանացիները կորցրին սպանված՝ մոտ 42 հազար զինվոր ու սպա։ Թշնամին ռազմական տեխնիկայի և գույքի հսկայական կորուստ կրեց։ Որպես ռազմավար մեր զորքերը գրավեցին 2.023 դաշտային հրանոթ, 89 տանկ և ինքնագնաց հրանոթ, 1.652 ականանետ, 4.673 գնդացիր և այլն։ Ոչնչացվեց հակառակորդի 120 ինքնաթիռ, 1.193 դաշտային հրանոթ, 568 ականանետ, 104 տանկ և ինքնագնաց հրանոթ և այլ ռազմական տեխնիկա։

Կարմիր Բանակը ապրիլի սկզբներին մի նոր փայլուն հաղթանակ տարավ հարավում։ Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը, Բալատոն լճի շրջանում տապալելով թշնամու հակագրոհը, հարձակման անցան, մտան Ավստրիայի սահմանները և մարտեր սկսեցին Ավստրիայի մայրաքա-



ղաք Վիեննայում։ Ուկրաինական 3-րդ ռազմաճակատի զորքերը Ուկրաինական 2-րդ ռազմաճակատի զորքերի օժանդակությամբ ապրիլի 13-ին գրավեցին Ավստրիայի մայրաքաղաք Վիեննան, որը հանդիսանում է ստրատեգիական կարևոր հենակետ՝ դեպի Գերմանիայի հարավը տանող ուղիներում։

Մարտի 16-ից մինչև ապրիլի 13-ը տևող մարտերում Կարմիր Բանակի զորամասերը ջախջախեցին գերմանական 11 տանկային դիվիզիա, այդ թվում ՍՍ 6-րդ տանկային բանակը, գերի վերցրին ավելի քան 130 հազար գերմանական զինվոր ու սպա։ Մեր զորքերը գրավեցին ու ոչնչացրին թշնամու հսկայական ռազմական տեխնիկա և ռազմական գույք, այդ թվում 1.345 տանկ և ինքնագնաց հրանոթ։

Այժմ մեր զորքերի Կենտրոնական խումբը, անցնելով Օդեր և Նեյսե գետերից արևմուտք, անտառապատ, ճահճային տեղանքի բարդ պայմաններում հաղթահարելով հակառակորդի մեծ քանակությամբ երկարատև հզոր կառուցվածքները, լայն ճյուղավորված դաշտային ամրությունները, կռիվներ են սկսել Բեռլինի փողոցներում, հարձակման ճանապարհին գրավելով գեր-

մանական պաշտպանության հզոր հանգույցներ ներկայացնող տասնյակ քաղաքներ։ Թշնամին բացառիկ կորուստներ է կրում։

Կարմիր Բանակի այս մեծ հարձակումը մոտեցրեց վերջնական հաղթանակի ժամը։ Իր հաղթական արշավում, Կարմիր Բանակը ուժգին հարվածներ հասցնելով գերմանական ուժերի գլխավոր խմբավորումներին վճռական ուղղություններում, ջարդ ու փշուր է անում հիտլերյան Գերմանիայի վերջին ռեզերվները։ Գազազած հիտլերականների դեմ մղվող պայքարի հիմնական ծանրությունը ինչպես առաջ, այնպես և ներկայումս՝ պատերազմի եզրափակիչ փուլում շարունակում է կրել Կարմիր Բանակը։ Կարմիր Բանակի սրընթաց հարձակումը հարկադրեց գերմանական հրամանատարությանը արևմտյան և հյուսիսային Իտալիայի ռազմաճակատից հապճեպորեն նորանոր դիվիզիաներ նետել արևելյան ռազմաճակատը։ Մեր դաշնակիցների համար ստեղծվեցին խիստ բարենպաստ հնարավորություններ հիտլերականների զորքերի դեմ հարձակման անցնելու համար։ Փետրվարի 23-ին դաշնակիցների զորքերն անցան հար-



ձակման և արագորեն առաջ շարժվեցին դեպի Գերմանիայի խորքը՝ ճանապարհին կազմակերպված դիմադրության չհանդիպելով։ Դաշնակիցների տանկային շարասյուները հասել և անցել են Էլբա գետը՝ Բեռլինի արևմտյան պաշտպանության վերջին ջրային գիծը, այնինչ Կարմիր Բանակի զորքերը հարկադրված են ուժեղ կռվով կոտրելու հիտլերականների կատաղի դիմադրությունը, որոնք յուրաքանչյուր բնակավայրում կռվում են կործանման դատապարտված մարդկանց հուսահատ կատաղությամբ։

Ռեյտեր գործակալության ռազմական տեսաբան Կիմխենը գրում է. «Զարմազանց կասկածելի է հանդիսանում գերմանացիների կրախի պատկերը արևմուտքում այն ժամանակ, երբ գերմանացիները շարունակում են ռուսների դեմ նորանոր ուժեր կենտրոնացնել...»։

Ինչ մեքենայությունների էլ դիմեն հիտլերականները, որքան էլ հիստերիկ ճչա Գեբբելսը, Գերմանիային փրկություն չկա, նա դատապարտված է ջախջախման։ Սովետական զորքերը հաղթականորեն առաջ են շարժվում՝ խորտակելով իրենց ճանապարհին բոլոր արգելքները, ազատագրելով

Եվրոպայի ստրկացված ժողովուրդներին հիտլերյան լծից։ Կարմիր Բանակը լրովին ազատագրեց Լեհաստանը, Չեխոսլովակիայի զգալի մասը, Ավստրիայի մայրաքաղաքը՝ Վիեննան, օգնեց Հարավսլավիայի ժողովուրդներին ջախջախելու գերմանական զավթիչներին և ազատագրելու Բելգրադը, ամբողջովին մաքրեց և պատերազմից դուրս բերեց Հունգարիան, գրավեց ամբողջ Արևելյան Պրուսիան, Արևելյան Պոմերանիան, գերմանական Սիլեզիայի մեծ մասը, մտավ Բրանդենբուրգ և Գերմանիայի մայրաքաղաք Բեռլինը։ Վերջ տրվեց գերմանացիների այն անապարծությանը, թե իբր «գերմանական բանակը կռվել է և կկռվի միայն ուրիշի հողում»։

Կարմիր Բանակը կատարելապես յուրացնելով հաղթանակի ստալինյան ստրատեգիան և տակտիկան, անօրինակ խիզախությամբ ջախջախում է հիտլերականներին հենց իրենց որջում։ «Մեր ձմեռային հարձակումը ցույց ավեց, որ Կարմիր Բանակը նորանոր ուժեր է գտնում ավելի բարդ ու դժվարին խնդիրներ լուծելու համար։ Նրա պանծալի ռազմիկները այժմ սովորել են թշնամուն ջախջախել ու ոչնչացնել ժամանակակից ռազմական գիտու-



թյան բոլոր կանոններով։ Մեր մարտիկները ոգեշնչված իրենց ազատագրական մեծ միսիայի գիտակցությամբ, հերոսության և անձնազոհության հրաշքներ են գործում, նրանք մարտի մեջ խիզախությանը և հանդուգնությանը հմտորեն զուգակցում են իրենց զենքի ուժը և հզորությունը։ Կարմիր Բանակի գեներալներն ու սպաները հզոր տեխնիկայի կենտրոնացված հարվածները վարպետորեն զուգորդում են ճկուն և սրընթաց մանևրի հետ։

«Պատերազմի 4-րդ տարում Կարմիր Բանակը դարձել է է՛լ ավելի ամուր և ուժեղ քան երբևիցե, նրա մարտական տեխնիկան դարձել է է՛լ ավելի կատարյալ, իսկ մարտական վարպետությունը՝ բազմապատիկ բարձր» (ընկեր Ստալինի 1945 թ. փետրվարի 23-ի հրամանից)։

Մեր զենքի հաղթանակը նորից ցուցադրեց Սովետական Միության ուժը, Լենինի-Ստալինի պարտիայի մեծ դերը, որպես սովետական ժողովրդի Հայրենական պատերազմի կազմակերպչի և ոգեշնչողի, որպես Կարմիր Բանակի ստեղծողի և դաստիարակչի, բանակ, որը մինչև իր արյան վերջին կաթիլը նվիրված է սոցիալիստական Հայրենիքին։

Շնորհիվ բոլշևիկյան պարտիայի, որը
ղեկավարվում է Ստալինի հանճարով, մեր
երկիրը ավելի ուժեղ դուրս եկավ ֆաշիս-
տական Գերմանիայից թե իր տնտեսու-
թյամբ և թե ռազմական տեսակետից։
«Ներկա պատերազմը,— ասաց ընկեր
Ստալինը 1943 թ. նոյեմբերի 6-ին Հոկ-
տեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլու-
ցիայի 26-րդ տարեդարձի առթիվ տված
զեկուցման մեջ,— ամբողջ ուժով հաստա-
տեց Լենինի այն հայտնի ցուցումը, որ
պատերազմը ամեն մի ժողովրդի նյութա-
կան և հոգևոր բոլոր ուժերի բազմակող-
մանի քննությունն է։ Պատերազմների
պատմությունը ուսուցանում է, որ այդ
քննությունը բռնել են միայն այն պետու-
թյունները, որոնք իրենց հակառակորդից
ուժեղ են տնտեսության զարգացմամբ և
կազմակերպմամբ, իրենց զորքերի փորձա-
ռությամբ, հմտությամբ և մարտական ո-
գով, ժողովրդի տոկունությամբ և միասնու-
թյամբ՝ պատերազմի ամբողջ ընթացքում։
Հենց այդպիսի պետություն է մեր պետու-
թյունը»։

Գերմանական պետությունը չդիմացավ
այդ փորձությանը ոչ անցյալ և ոչ էլ ներ-
կա պատերազմում, չնայած պատերազմի



սկզբում նրա համար ստեղծված նպաստա-
վոր պայմաններին։

«Պետք է խոստովանել, որ ներկա պա-
տերազմում հիտլերյան Գերմանիան իր
ֆաշիստական բանակով ավելի հզոր, ենեց
և փորձված հակառակորդ դուրս եկավ, քան
Գերմանիան ու նրա բանակը անցյալ բո-
լոր պատերազմներում։ Դրան պետք է ա-
վելացնել, որ գերմանացիներին այս պա-
տերազմում հաջողվեց օգտագործել հա-
մարյա ամբողջ Եվրոպայի արտադրողական
ուժերը և իր վասալական պետությունների
բավականին զգալի բանակները։ Եվ եթե,
չնայած Գերմանիայի համար պատերազմ
մղելու այդ բարենպաստ պայմաններին,
նա, այնուամենայնիվ, կանգնեց անխուսա-
փելի կործանման եզրին, ապա այդ պետք
է բացատրել նրանով, որ Գերմանիայի
գլխավոր հակառակորդը՝ Սովետական
Միությունն իր ուժով գերազանցեց հիտ-
լերյան Գերմանիային» (Ի. ՍՏԱԼԻՆ, «Հոկ-
տեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլու-
ցիայի 27-րդ տարեդարձը»)։

Մինչև ՍՍՌՄ-ի վրա հարձակվելը գեր-
մանա-ֆաշիստական հորդաները՝ զրահա-
պատված և մինչև ատամները զինված ա-
նարգել կերպով անցան ամբողջ Եվրոպա-

յով։ Ոմանց այն ժամանակ արևմտյան Եվրոպայում և Ամերիկայում թվաց, որ Գերմանիան անպարտելի է, որ նա կդառնա Եվրոպայի տերը և իր կամքը կթելադրի ամբողջ աշխարհին։ Արևմտա-եվրոպական պետությունների ոչ մի բանակ չկարողացավ կանգնեցնել հիտլերյան հորդաներին։ Եվրոպական ավելի քան 10 երկրներ զավթվեցին հիտլերյան Գերմանիայի կողմից։ Գերմանական օկուպանտները ստրկացրին եվրոպական ցամաքի ժողովուրդներին, ոտնահարեցին նրանց ազգային անկախությունը, ոչնչացրին պետական ինքնուրույնությունը, անարգեցին նրանց ազգային արժանապատվությունը՝ կիրառելով ժողովուրդների բնաջնջման մարդակեր քաղաքականությունը։

Միայն մեր, սովետական երկիրը և Կարմիր Բանակը ընդունակ գտնվեցին կասեցնել հիտլերյան ավազակային հորդաների հարձակումը և նրանց խորտակման ու վերջնական ջախջախման եզրին կանգնեցնել։ Կարմիր Բանակի հաղթանակները պայմանավորված են սոցիալիստական կարգերի հզորությամբ, որը մեր Հայրենիքին մեծ և անպարտելի ուժ է տալիս։ Սոցիալիստական կարգերը ապահովեցին



Կարմիր Բանակի համար ամենաամուր, ամենաապահով և կազմակերպված թիկունքը, որը Կարմիր Բանակի մատակարարման հզոր աղբյուրն է։ Երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման շնորհիվ սովետական ժողովուրդը Կարմիր Բանակին մատակարարեց առաջնակարգ տեխնիկա և սպառազինություն։ Ներկայումս Կարմիր Բանակը իր տեխնիկական հագեցվածությամբ և ռազմական վարպետությամբ ամենալավագույն բանակն է աշխարհում։

Կարմիր Բանակին անձնվիրաբար պաշտպանում է սովետական ամբողջ երկիրը, մեր երկրի բոլոր ժողովուրդները, որոնք միավորված են ստալինյան անխախտ բարեկամությամբ։ Սովետական ջերմ հայրենասիրությամբ տոգորված մեր մարդիկ թիկունքում, աշխատանքի բնագավառում՝ պատմության մեջ անօրինակ սխրագործություններ կատարեցին։ Երբ մեր Հայրենիքի վրա կախվեցին մահացու վտանգի սև ամպերը, սովետական ամբողջ ժողովուրդը ընկեր Ստալինի կոչով պայքարի դուրս եկավ մեր Հայրենիքի պատվի, ազատության և անկախության համար։ Ամբողջ երկիրը վերածվեց մարտական միասնական ճակա-

րի։ Թիկունքը և ռազմաճակատը ձուլվեցին ի մի։ Մեր երկրի ժողովուրդները է՛լ ավելի ծավալեցին իրենց հզոր ուժերը և հերոսական անդուլ աշխատանքով սկսեցին կոփել հաղթանակը։ Շատ դժվարություն հաղթահարեց սովետական ժողովուրդը։ Պատերազմի սկզբում, գերմանացիների կողմից մեր երկրի մի շարք կարևորագույն արդյունաբերական և գյուղատնտեսական շրջանները օկուպացվելու հետևանքով, մենք մետաղի, վառելանյութի, էլեկտրոէներգիայի լուրջ պակասություն զգացինք։ Մեր Կարմիր Բանակը գերմանականի համեմատությամբ այն ժամանակ ուներ ավելի քիչ տանկ, ինքնաթիռ, ականանետ, ավտոմատ զենք։ Սակայն սովետական թիկունքի աշխատավորները, Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ, կարողացան հաղթահարել բոլոր դժվարությունները՝ կարճ ժամանակամիջոցում պատերազմի պայմաններում վերակառուցել ամբողջ տնտեսությունը ռազմական ձևով, օրեցօր ավելացնել սպառազինության և ռազմամթերքի մատակարարումը ռազմաճակատին։ Շնորհիվ դրան, Կարմիր Բանակը շատ բանով գերազանցեց գերմանական



բանակին թե՛ իր սպառազինության քանակով և թե՛ որակով։

«Ճիշտ այնպես, ինչպես Կարմիր Բանակը մեկ ընդդեմ մեկի մղվող երկարատև ու ծանր պայքարում ռազմական հաղթանակ տարավ ֆաշիստական զորքերի դեմ, սովետական թիկունքի աշխատավորները հիտլերյան Գերմանիայի ու նրա գործակիցների դեմ իրենց մենամարտում տնտեսական հաղթանակ տարան թշնամու նկատմամբ» (Ի. ՍՏԱԼԻՆ)։

Մեր արդյունաբերությունը պատերազմի տարիներին կարողացավ ապահովել սպառազինության արագ և անընդհատ արտադրությունը։ Պատերազմի ժամանակաշրջանում 1941—1944 թ. թ. ՍՍՌՄ-ում ինքնաթիռների արտադրությունը ավելացավ 4 անգամ, տանկերի արտադրությունը 7—8 անգամ, հրետանային սպառազինության արտադրությունը՝ 6 անգամ։ Դրա հետ միասին մեր արդյունաբերությունը ապահովեց հրանյութերի անընդհատ մատակարարումը ռազմաճակատին։ Հայրենական պատերազմի տարիներին հրանյութերի արտադրությունը ավելացավ համարյա 4 անգամ։

Միայն մեր վառոդի նոր գործարաններից

մեկը Հայրենական պատերազմի տարիներին թողարկեց 60 տոկոսով ավելի վառոդ, քան ցարական Ռուսաստանի բոլոր վառոդի գործարանները միասին վերցրած առաջին համաշխարհային պատերազմի ժամանակվա ընթացքում։ Ինչ վերաբերում է մեր ռազմական տեխնիկայի որակին, ապա նա, ինչպես պատերազմի սկզբում, առավել ևս հիմա, շատ ու շատ գերազանցում է թշնամու տեխնիկային։

Այս հաջողությունները առավել նշանակալից են, որովհետև նրանք ունեն ամուր տնտեսական հիմք։ Սպառազինության արտադրության աճը մեր երկրում տեղի է ունեցել ոչ թե ի հաշիվ տնտեսության ուրիշ ճյուղերի քայքայման, այլ մեր տնտեսության բազմակողմանի վերելքի և լայնացման, որ բացառիկ երևույթ է պատերազմների պատմության մեջ։ Սովետական տնտեսությունը պատերազմի տարիներին զարգացավ լայնացրած վերարտադրման օրենքով։ Սովետական մարդիկ կարողացան ապահովել ռազմաճակատը ամեն ինչով և առաջ մղել տնտեսությունը վերընթաց գծով։

«...Սովետական պետության տնտեսական հիմքը ավելի կենսունակ դուրս եկավ, քան թշնամի պետությունների տնտեսու-



թյունը» (Ի. ՍՏԱԼԻՆ)։

Մեր երկրում սպառազինության անընդհատ արտադրությունը ներկա պատերազմում ընթացել է տնտեսության բոլոր մյուս ճյուղերի արտադրությանը զուգահեռ։ Սոցիալիստական տնտեսության ներքին ամրության փայլուն ցուցանիշ է սև մետալուրգիայի հզոր աճը պատերազմի ժամանակաշրջանում։ Բավական է ասել, որ 1945 թ. սկզբին արևելքում կառուցվել և գործարկվել են 10 դոմենյան հնոցներ, 43 մարտենյան և էլեկտրոպողպատաձուլման հնոցներ, 21 պրոկատի և գլանակների դազգահներ, 12 կոքսային մարտկոցներ։ Պատերազմի ժամանակ մետալուրգիական նոր գործարաններ ստեղծվեցին Մագնիտոգորսկում, Ստալինսկում, Ուզբեկստանում, Ղազախստանում և այլն։ Մեծ չափերով աճեց մետաղի արտադրությունը և հումքի հանույթը ՍՍՌՄ-ի արևելյան շրջաններում։ Արևելքի մետալուրգիայի զարգացման թափի մասին պատկերացում են տալիս հետևյալ թվերը. Չուգունի ձուլումը, 1940 թ. համեմատությամբ, 1944 թ. աճեց 47 տոկոսով, պողպատի ձուլումը՝ 43 տոկոսով, պրոկատի թողարկումը՝ 45 տոկոսով, գլանակների թողարկումը՝ 448 տոկոսով,

կոքսի կիզումը՝ 93 տոկոսով, երկաթի հանույթը՝ 22 տոկոսով, մարգանեցի հանույթը՝ 136 տոկոսով։ Զարգացման այսպիսի տեմպեր արևելյան մետալուրգիան երբեք չէր տեսել։ Եթե մինչև պատերազմը, 1938, 1939, 1940 թվերին, երեք տարում, Ուրալում արդյունաբերությունը աճեց 1½ անգամ, ապա պատերազմի ժամանակաշրջանում, յուրաքանչյուր մեկ տարում, այն աճեց մեկ և կես անգամ։

Անցած 1944 թվին, պատերազմի 4-րդ տարում, սովետական տնտեսությունը ապրեց առավել մեծ վերելք։ ՍՍՌՄ-ի տնտեսական հզորության հիմքը կազմող ծանր ինդուստրիան անշեղորեն աճում է։ 1944 թ. սև մետաղների արտադրությունը մեր երկրում, նախորդ 1943 թ. համեմատությամբ, աճեց համարյա ⅓ անգամ, այսինքն չուգունի արտադրությունը՝ 31 տոկոսով, պողպատի՝ 29 տոկոսով, պրոկատի՝ 28 տոկոսով։ Այս աճման գործում մեծ դեր խաղաց նաև մեր հարավի մետալուրգիայի արագ վերականգնումը։ Հարավի նըշանակությունը, ռազմաճակատին մետաղով բավարարելու գործում, արագորեն աճում է։ Գերմանական զավթիչներից ազատագրվելուց հետո հարավում, մետալուրգ-



ների հերոսական աշխատանքի շնորհիվ, արդեն վերականգնվել են 15 դոմենյան և 47 մարտենյան հնոցներ, 27 պրոկատների և գլանակների դազգահներ, 56 կոքսի մարտկոց, ավելի քան 1.000 հանքահոր և այլն։

Մեծ հաջողություններ են ձեռք բերել վառելանյութի արդյունաբերության աշխատողները։ Մեր երկրում ածխի հանույթը, 1943 թ. համեմատությամբ, 1944 թվին աճեց 31 տոկոսով։ Ուրալը այժմ համարյա 2 անգամ ավելի ածուխ է տալիս, քան մինչև պատերազմը, Կարագանդան՝ 70 տոկոսով ավելի, իսկ Մերձմոսկովյան ավազանը՝ 1½ անգամ ավելի։ Քարածխի հանույթի ընդհանուր վերելքի մեջ իր արժանի դերը կատարեց Դոնբասը, որը արագ տեմպերով վերականգնվում է՝ ֆաշիստների կողմից ավերման ենթարկվելուց հետո։ 1944 թ. արդեն Դոնբասում քարածխի հանույթը մի քանի անգամ աճեց նախորդ տարվա համեմատությամբ։

1944 թ. ավելի քան 30 տոկոսով աճեց ծանր մեքենաշինության արտադրանքը։ Արագ կերպով ծավալվում է մեր երկրի մեքենաշինության պարծանքը կազմող Նովո-Կրամատորսկի վերականգնված գործա-

րանի արտադրանքը։ Այդ գործարանը գերմանացիները մեկ և կես տարի առաջ ավերակների էին վերածել։ Գերմանական զավթիչներից ազատագրված շրջաններում արագորեն նորից շարքի են մտնում բազմաթիվ գործարաններ ու ֆաբրիկաներ։

Պանծալի Ստալինգրադի վերականգնված տրակտորային գործարանը արդեն ապրիլ ամսին երկրին տվեց իր 1.000-րդ տրակտորը։ Արդյունաբերության համախառն արտադրանքը գերմանական օկուպանտներից ազատագրված շրջաններում 1944 թվին, նախորդ 1943 թ. համեմատությամբ, եռապատկվեց։

1944 թ. մեծ հաջողություններ ձեռք բերվեցին թեթև և սննդի արդյունաբերության գծով։

Սովետական էներգետիկները պատվով կատարեցին Հայրենական պատերազմի տարիներին անընդհատ աճող ռազմական արդյունաբերությանը անխափան էներգիա մատակարարելու իրենց մեծ խնդիրը։ Պատերազմի տարիներին Ուրալի և արևելյան այլ մարզերի էլեկտրոկայանները իրենց կարողությունը համարյա կրկնապատկեցին։ Միայն Կրասնոգորսկի ջերմաէլեկտրոցենտրալը այս ժամանակամիջոցում իր տուր-



բինների կարողությունը ավելացրեց 5½ անգամ, կաթսաների կարողությունը՝ 6 անգամ։

Կառուցվեց Չելյաբինսկի նոր ջերմաէլեկտրոցենտրալը, որտեղ դրված է մեծագույն հզորության՝ 100.000 կիլովատ ուժանոց տուրբինա։ Ուզբեկստանում՝ Չիրչիկ գետի վրա ավարտված է 4 նոր հիդրոէլեկտրոկայանների կառուցումը։ Այստեղ կառուցվում է Ֆարհադի նոր հզոր հիդրոէլեկտրոկայանը։ Արագորեն բուժվում են գերմանա-ֆաշիստական զավթիչների կողմից մեր էներգետիկ տնտեսությանը հասցրված վերքերը։ Գերմանական զավթիչներից ազատագրված շրջաններում 1944 թվի վերջին արդեն վերականգնվեցին և գործարկվեցին 35 շրջանային էլեկտրոկայան, 80 տուրբին և 156 կաթսա։ 1943 թվի համեմատությամբ էլեկտրոկայանների կարողությունը 1944 թվին ավելացավ համարյա 2½ անգամ։ Վաղուց ի վեր արդեն գործում է Վոլխովի հիդրոէլեկտրոկայանը։ Սովետական ժողովուրդը արագ տեմպերով վերականգնում է իր հոյակապ կոթողներից մեկը, իր պարծանքը՝ Լենինի անվան Դնեպրոգեսը։ 1945 թվի մայիսի 1-ը մեծ նվաճումներով են դիմավորում սովետական

երկաթուղայինները, տրանսպորտի աշխա-
տողները: Սովետական երկաթուղային
տրանսպորտը Հայրենական պատերազմի
տարիներին իր կազմակերպվածությամբ,
ճշտապահ աշխատանքով փայլուն կերպով
հաղթահարեց բոլոր դժվարությունները,
ժամանակին կատարելով փոխադրումների
պլանը: Զգալիորեն լայնացել է փոխա-
դրումների մասշտաբը: Միայն վերջին տա-
րում երկաթուղիների օրական միջին բեռ-
նումը աճել է 22 տոկոսով:

Պատերազմի ժամանակաշրջանում մեր
ինդուստրիան տեխնիկական առաջադիմու-
թյան գծով հսկայական վերելք ապրեց: Ա-
վելի ևս կատարելագործվեց արտադրու-
թյան տեխնոլոգիան, բարելավվեց կազմա-
կերպումը, բանվորական ուժի և արտադրու-
թյան միջոցների ռացիոնալ օգտագործումը,
ծավալվեց անընդհատ հոսանքի մեթոդը և
այլն:

Մեր արդյունաբերությունը, իր տեխնիկա-
յով և արտադրության կուլտուրայով, իր
առաջխաղացման տեմպերի արագությամբ,
այժմ ավելի բարձր մակարդակի վրա է,
քան մինչ պատերազմը:

1944 թ. կապիտալ շինարարությունը մեր
երկրում, 1943 թվի հետ շինարարության



համեմատությամբ, աճեց 1½ անգամ: Այս
համեմատությունը բնորոշում է մեր առաջ-
խաղացման տեմպի վիթխարիությունը: Հայ-
րենական պատերազմի տարիներին, չնայած
արդյունաբերության մեջ եկած նոր բան-
վորների և բանվորուհիների անընդհատ հո-
սանքին, աշխատանքի արտադրողականու-
թյունը ավելի ևս բարձրացավ: Աշխատանքի
արտադրողականության բարձրացման և
ռազմաճակատի պատվերները արագ կա-
տարելու գործում կարևորագույն միջոց հան-
դիսացավ սոցիալիստական մրցությունը և
ստախանովյան շարժումը, որն ընդգրկեց
բանվորների, ծառայողների և կոլխոզնիկ-
ների հոծ մասսաներ:

Համամիութենական սոցիալիստական
մրցությունը իրոք դարձավ միլիոնավորների
գործ: Սոցմրցման, ստախանովյան շարժ-
ման ծավալման թափը փայլուն վկայությունն
է մեր աշխատավորության բարձր հայրե-
նասիրության և նվիրվածության՝ իր հա-
րազատ պետության ու մեծ առաջնորդ ըն-
կեր Ստալինին:

Սովետական մարդկանց սոցիալիստական
մրցությունը ընթանում է թիկունքում «ամեն
ինչ ռազմաճակատի համար, ամեն ինչ հաղ-
թանակի համար» նշանաբանի տակ: Ար-

դյունաբերության մի շարք առանձին ճյուղերում մրցողների թիվը կազմում է բոլոր բանվորների 80-ից մինչև 90 տոկոսը։ Բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների ակտիվ, ստեղծագործ գործունեության հետևանքով պատերազմի ժամանակաշրջանում արտադրության մեջ կատարվեցին տեխնիկական-տնտեսական լուրջ տեղաշարժեր։ Լայնորեն տարածվեցին անընդհատ հոսանքի մեթոդը և գրաֆիկայով աշխատանքը։ Մշակվեցին և լայնորեն կիրառվում են բոլոր մեքենաների արագ յուրացման, արագ կառուցման մեթոդները, արտադրության նոր մեթոդները և տեխնոլոգիական պրոցեսները։ Դրանք հնարավորություն տվին ավելի բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը։ Այսպես օրինակ. հրետանային արդյունաբերության մեջ աշխատանքի արտադրողականությունը 1944 թ. բարձրացավ, 1940 թվի համեմատությամբ, 2,2 անգամ։

1942 թ. մայիսից մինչև 1944 թ. ապրիլը ընկած ժամանակամիջոցում աշխատանքի արտադրողականությունն արդյունաբերության մեջ աճեց 40 տոկոսով, այդ թվում ավիացիոն արդյունաբերության մեջ՝ 47 տոկոսով, տանկային՝ 43 տոկոսով, հրա-



նյութի արտադրման՝ 54 տոկոսով, թեթև արդյունաբերության մեջ՝ 55 տոկոսով։ Այս թվերը վառ կերպով վկայում են սովետական ժողովրդի հաղթանակի մասին՝ աշխատանքի ճակատում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացումը առաջ բերեց արտադրանքի ինքնարժեքի զգալի իջեցում։ Դրա հետևանքով պատերազմի ընթացքում մեր գործարանների ռազմական արտադրանքի գները ավելի քան 40 միլիարդ ռուբլով իջան։ Ներկայումս ռազմական արդյունաբերության արտադրանքի ինքնարժեքը, 1940 թվի համեմատությամբ, երկու անգամ իջել է, իսկ ծանր, կատարելագործված տանկերի ինքնարժեքը, սկզբնական շրջանի համեմատությամբ, իջել է 3 անգամ։

Սովետական ռազմական արդյունաբերությունը **ամսե-ամիս աճում և ամրապնդվում** է։ Նա մատակարարում է Կարմիր Բանակին այն ամենն, ինչ անհրաժեշտ է շուտափույթ հաղթանակի համար։ Պատերազմի տարիներին սովետական տնտեսության և տեխնիկայի մեջ կատարված այս հսկայական առաջընթացը հնարավորություն է ստեղծում պատերազմից հետո հաջողությամբ լուծելու տնտեսական նոր վիթխարի խնդիրները։

Այդ կհասցնի մեր սոցիալիստական տնտեսության հետագա է՛լ ավելի հզորացմանը։

Մեր երկրի բանվոր դասակարգը ամենևին չի արբենում իր այս վիթխարի հաջողություններից։ Սովետական բանվորները, ինժեներները և տեխնիկները գիտեն, որ նրանց սպասում են վիթխարի խնդիրներ և լուրջ դժվարություններ։ Մեզ անհրաժեշտ է ամենակարճ ժամկետում վերականգնել թշնամու կողմից ավերված ինդուստրիան ազատագրված շրջաններում, անհրաժեշտ է գործարկել նոր կառուցվող և վերակառուցվող տասնյակ ձեռնարկություններ, հանքահորեր, էլեկտրակայաններ, վերաշինել ավերված քաղաքներն ու գյուղերը։ Անհրաժեշտ է անշեղորեն ավելացնել թողարկվող արտադրանքը, բարձրացնել արտադրողականությունը, ձգտել, որ բոլոր նոր բանվորները լիովին տիրապետեն իրենց գործի տեխնիկային։

1945 թվին նոր թափով ծավալված է Համամիութենական սոցիալիստական մրցությունը։ Պատերազմի ավարտական փուլում Սովետական Միության բանվորներն ու բանվորուհիները, մեր պանծալի երիտասարդությունը աշխատանքային նորանոր սխրագործություններով են պատասխանում հաղթական Կարմիր Բանակի անօրինակ հերոսությանը և ուժեղացնում են ռազմաճակատին ցույց տրվող օգնությունը։

1945 թվի մայիսի մեկի օրը մեր երկրի կոլխոզային գյուղացիությունը դիմավորում է վիթխարի նվաճումներով և հաղթանակներով։ Հայրենական մեծ պատերազմում իր ամբողջ ուժով արտահայտվեց կոլխոզային կարգերի դերն ու կենսունակությունը, կոլխոզային գյուղացիության հայրենասիրությունը։ Մեր գյուղացիությունը, գյուղի պատմության մեջ առաջին անգամ, ցույց տվեց համաժողովրդական և ընդհանուր պետական շահերի բարձր գիտակցում։ Չնայած պատերազմի ժամանակվա դժվարություններին՝ կոլխոզային գյուղում աշխատող ուժի, մեքենաների և քաշող ուժի զգալի կրճատմանը, գյուղատնտեսության աշխատողները կարողացան մեր բնակչությանը և բանակին ապահովել անհրաժեշտ պարենամթերքով, իսկ արդյունաբերությանը՝ հումքով։

«Մեր կոլխոզային գյուղացիությունը ակտիվորեն և Հայրենիքի հանդեպ իր պարտքի լիակատար գիտակցությամբ Կարմիր Բանակին օգնում է թշնամու դեմ հաղթանակ տանելու գործում» (Ի. ՍՏԱԼԻՆ)։

Մեր կոլխոզային տնտեսությունը պատվով բռնեց պատերազմի փորձության քննությունը։ Կոլխոզային կարգը ավելի ևս ամրապնդվեց։ Պատերազմի տարիներին կոլխոզները շատ մարզերում ու ռեսպուբլիկաներում ավելացրին գյուղատնտեսական մթերքների և արդյունաբերական հումքի արտադրությունը։

1944 թվին կոլխոզներն ավելի լավ աշխատեցին քան 1943 թվին։ Գարնանացանն անցկացվեց ավելի սեղմ ժամկետում և որակով։ Բերքահավաքն անցավ կազմակերպված։ Բարձրացավ գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունը։ Այս հնարավորություն տվեց ապահովելու հացահատիկի, կարտոֆիլի, ճակնդեղի և գյուղատնտեսական այլ կուլտուրաների պետական մթերումները։ Ետևում մնացին ազատագրված շրջաններում գյուղատնտեսության վերականգնման առավել դժվարությունները։ Գերմանական օկուպացիայից ազատագրված մի շարք մարզեր արդեն առաջավորների շարքումն են ընթանում և ստացան Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը բերքատվության բարձրացման համար (Պոլտավայի, Կիևի, Կալինինի և այլ մարզեր)։



Արագորեն վերականգնվում է Ուկրաինայի գյուղատնտեսությունը։ Արդեն 1944 թ. Ուկրաինայի ցանքատարածությունները մինչպատերազմյան շրջանի 65 տոկոսն էին կազմում, իսկ հացահատիկի ցանքսերը՝ 73 տոկոս։

1944 թվին Սովետական Միությունում ցանքսատարածություններն ընդարձակվեցին 16 միլիոն հեկտարով։ Ցանքսատարածությունների աճման զուգահեռ կոլխոզներում և սովխոզներում աճեց բերքատվությունը։ Ուզբեկստանում, որը մեր բամբակի հիմնական ռայոնն է, բամբակի բերքատվությունը 1944 թվին աճեց 60 տոկոսով։ Հացահատիկի բարձր բերք ստացան Մոսկվայի մարզի կոլխոզնիկները։ Նրանք 1944 թվին հեկտարից միջին հաշվով հավաքեցին 11 ցենտներ հացահատիկ։ Կալինինի մարզի կոլխոզնիկները հեկտարից մոտ 13 ցենտներ հացահատիկ հավաքեցին։

1944 թ. գյուղատնտեսության մեջ ծավալված Համամիութենական սոցիալիստական մրցությունում շատ ռեսպուբլիկաներ, մարզեր և շրջաններ հաղթող դուրս եկան։

1944 թվին բարձր բերք ստանալու համար Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշին արժանացան

Մոսկվայի, Կիևի, Կալինինի, Պոլտավայի, Լենինգրադի մարզերը։ Կոլխոզային անասնաբուծության վերելքի համար Կարմիր դրոշներ ստացան Մոսկվայի, Գուրևի, Կարագանդայի մարզերը, Ադրբեջանական ՍՍՌ-ն և Դաղստանի ԱՍՍՌ-ն։ 30 առաջավոր ռայոններ նույնպես ստացան Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը և հատուկ նշվեցին շատ մարզեր, երկրամասեր ու ռեսպուբլիկաներ՝ գյուղատնտեսության ասպարիզում ձեռք բերած նվաճումների համար։ Նշվածների թվումն է նաև Հայկական ՍՍՌ-ն։ Կոլխոզային կարգերի ուժն ու կենսունակությունը ցայտուն կերպով երևան է գալիս անասնաբուծության զարգացման ասպարիզում։ Անասնաբուծությունը մեր երկրում ոչ թե անկում ապրեց, ինչպես սովորաբար եղել է անցյալ պատերազմների ժամանակ, այլ ընդհակառակը, շարունակ ավելացրել է իր զարգացման տեմպերը։ Մեր շատ ռեսպուբլիկաներ, երկրամասեր ու մարզեր պատերազմի տարիներին ունեցան անասունների գլխաքանակի հսկայական աճում։ Հատկապես 1944 թիվը աչքի ընկնող տարի հանդիսացավ անասնաբուծության զարգացման բնագավառում։ Կոլխոզներն ու սովխոզները լրիվ կա-



տարեցին պետության միս հանձնելու պետական պարտավորությունները և միաժամանակ ապահովեցին հոտի հետագա աճը։ Կոլխոզային ֆերմաներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը մեկ տարում ավելացավ 3 տոկոսով, խոզերինը՝ 8 տոկոսով։ Անասնաբուծության զարգացման գործում էլ ավելի խոշոր նվաճումներ ունեն սովխոզները։ Զգալի չափով բարելավվել է ՄՏ կայանների աշխատանքը։ 1944 թվին ՄՏ կայանները կատարեցին 27 միլիոն հեկտարից ավելի աշխատանք քան 1943 թվին։ Կոլխոզային աշխատավորությունը մեծ եռանդ է գործադրում 1945 թ. գյուղատնտեսական աշխատանքները ավելի բարձր ցուցանիշներով կենսագործելու։ Բոլշևիկյան պարտիան և կառավարությունը այս տարի ավելի մեծ ու պատասխանատու խնդիրներ են դրել մեր գյուղատնտեսության առաջ։ Այս տարի գյուղատնտեսության գլխավոր խնդիրն է հանդիսանում ամեն կերպ բարձրացնել բերքատվությունը և ավելացնել հացահատիկի ու գյուղատնտեսական մյուս կուլտուրաների համախառն արտադրանքը։ Դրա հետ միասին առաջադրված է ավելացնել ցանքատարածությունները 8,1 միլիոն հեկտարով՝ անցած տարվա համե-

մատությամբ։ Կոլխոզներն ու սովխոզները, ՄՏ կայանները բոլոր հնարավորություններն ունեն պետության առաջադրանքը կատարելու համար։

Գերմանա-ֆաշիստական ավազակներին ջախջախելու գործում անգնահատելի ավանդ ներդրեց մեր սովետական ինտելիգենցիան։ Սովետական ինտելիգենցիան անընդհատ կատարելագործում է Կարմիր Բանակի ռազմական տեխնիկան, օգնում բանվորներին ու կոլխոզնիկներին արդյունաբերության ու գյուղատնտեսության բարձրացման գործում, առաջ է մղում և զարգացնում ժամանակակից գիտությունն ու կուլտուրան։ Սովետական կոնստրուկտորներն ու ինժեներներն ստեղծեցին սպառազինության մինչև այժմ չտեսնված տեսակներ, որոնք շատ ու շատ հատկություններով գերազանցում են թշնամու սպառազինությանը։ Սովետական գյուղատնտեսներն ու գիտնականները ուղիներ և միջոցներ են որոնում ավելի բարձր բերքատվության հասնելու համար։

Սովետական բժիշկներն անձնվիրաբար պայքարում են Կարմիր Բանակի վիրավոր ռազմիկների կյանքի փրկության և նրանց Կարմիր Բանակի շարքերը շուտ վերադարձնելու համար։ Հանրածանոթ փաստ է, որ



գոսպիտալային գործը՝ վիրավորների բուժման գործը մեր երկրում դրված է ավելի լավ հիմունքների վրա, քան որևէ այլ երկրում։ Շարք վերադարձող մարտիկների ու սպաների տոկոսը, նրանց հաջող բուժման հետևանքով, կազմում է 70, մի բան, որ չկա աշխարհի և ոչ մի բանակում։ Սովետական գիտնականները նոր ուղիներ բաց արին բժշկության մեջ, ստեղծեցին բուժման նոր մեթոդներ և պրեպարատներ, որոնք հիանալի արդյունքներ են տալիս։ Սովետական գրողները, կոմպոզիտորները, նկարիչները, բոլոր արվեստագետները հարստացրին մեր կուլտուրան, արվեստն ու գրականությունը նոր հոյակապ ստեղծագործություններով, որոնց մեջ ցուցադրված են սովետական մարդկանց մեծությունն ու ուժը, նրանց նպատակների ազնվությունն ու վեհությունը, նրանց անհողդողդ կամքն ու միասնությունը, բուռն ատելությունը դեպի գիշատիչ թշնամին և ջերմ, սովետական հայրենասիրությունը։

Մեծ են և անթվարկելի սովետական ժողովրդի նվաճումները։ Դրանք ցուցադրում են մեր երկրի բոլոր ժողովուրդների ստալինյան անխախտ բարեկամությունը, որը ըս-

*տեղծվել և կոփվել է սովետական իշխանության հիման վրա՝ Լենինի-Ստալինի պարտիայի ղեկավարությամբ։*

*Մեր երկրի բոլոր ժողովուրդները, ռուս մեծ ժողովրդի գլխավորությամբ մարտական հզոր համագործակցությամբ համախմբված, հերոսաբար պայքարեցին մեր սոցիալիստական Հայրենիքի համար։ Ռուս մեծ ժողովրդի և ՍՍՌՄ մյուս ժողովուրդների եղբայրական օգնության շնորհիվ ազատագրվեցին սովետական Ուկրաինայի, Մոլդավիայի, Բելոռուսիայի, Լիտվայի, Լատվիայի, Էստոնիայի, Կարելա-Ֆիննական սովետական ռեսպուբլիկայի հողերը և նրանց ժողովուրդները գերմանա-ֆաշիստական լծից։ Սովետական ժողովուրդը և նրա Կարմիր Բանակը կատարեց և շարունակում է կատարել իր ազատագրական մեծ միսիան եվրոպական ժողովուրդների նկատմամբ։*

*Սովետական Հայրենիքի պաշտպանության, հիտլերյան Գերմանիայի վերջնական ջախջախման մեծ պայքարում իր արժանի տեղը գրավեց Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան, ամբողջ հայ ժողովուրդը, որն իր ազատ գոյության և ծաղկման համար պարտական է սովետական իշխանությանը։ Սովետական Միության*



*բազմազգ ժողովուրդների հետ միասին, ռուս ազատարար ժողովրդի գլխավորությամբ, պատերազմի առաջին իսկ օրից հայ ժողովուրդը մեկ մարդու պես համախմբված սիրելի առաջնորդ մեծ Ստալինի շուրջը, իր ամբողջ ուժն ու եռանդը ներդրեց՝ պաշտպանելու Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի նվաճումները, պատվով կատարելու իր պարտքը հարազատ սովետական Հայրենիքի հանդեպ։*

*Հայ ժողովրդի զավակները պատերազմի ճակատներում ցուցաբերեցին և շարունակում են ցուցաբերել անօրինակ խիզախություն և արիություն, անսահման նվիրվածություն սովետական պետությանը և բոլշևիկյան պարտիային։ Հայրենիքը բարձր է գնահատում հայ ռազմիկների սխրագործությունները։ 26 հազարից ավելի հայ մարտիկների, սպաների ու գեներալների կուրծքը զարդարում են Սովետական Միության շքանշաններն ու մեդալները։ Հայ ժողովրդի 74 զավակներ արժանացել են մեծագույն փառքի՝ Սովետական Միության Հերոսի կոչման։ Սովետական Միության կրկնակի Հերոսի կոչման արժանացավ մեծ օդաչու Նելսոն Ստեփանյանը։*

*Ժողովուրդների բարեկամության, սովե-*

տական հայրենասիրության մեծ գաղափարներով ոգեշնչված հայ ժողովրդի զավակները Կարմիր Բանակի պողպատյա շարքերում կրծքով պաշտպանել են սովետական Հայրենիքը և այժմ ջախջախում են թշնամուն նրա սեփական որջում։ Ստալինյան զորավարների փայլուն համաստեղության շարքում իրենց արժանի տեղն են գրավում 40-ից ավելի հայ գեներալները։

Բանակի գեներալ, Սովետական Միության Հերոս Բաղրամյանի, գեներալ-լեյտենանտներ Գալաչյանի, Գրինույանի, գեներալ-մայոր Մարտիրոսյանի, Սովետական Միության Հերոս գեներալ-մայոր Ղազարյանի, գեներալ-մայորներ Սաֆարյանի, Հախնազարյանի, Առուշանյանի, Բաբայանի, Հովհաննիսյանի, Գասպարյանի և ուրիշ հայ գեներալների փառապանծ զորքերը՝ կատարելով Գերագույն Գլխավոր Հրամանատար ընկեր Ստալինի ռազմագիտական հանճարեղ պլանները, Կարմիր Բանակի հաղթական դրոշները տարել են Կովկասյան նախալեռներից, Ստալինգրադից, Մոսկվայից ու Լենինգրադից մինչև Կարպատները, Արևելյան Պրուսիա, Պոմերանիա, մինչև Բեռլին։ Նրանց անունները բազմիցս նշվել են ընկեր Ստալինի հաղթանակ ավետող հրամաններում։



Սովետական Հայաստանի աշխատավորները թիկունքում աշխատանքային սխրագործություններով ետ չեն մնում ռազմաճակատի իրենց հերոս զավակներից ու եղբայրներից։

Հայաստանը Հայրենական պատերազմի տարիներին սովետական ռեսպուբլիկաների շարքում իր արժանի տեղը գրավեց՝ հանդիսանալով Կարմիր Բանակի զինանոցներից մեկը։ Պատերազմի տարիներին Հայկական Սովետական Ռեսպուբլիկայում կառուցվեցին և գործարկվեցին երեք տասնյակ նոր ձեռնարկություններ։ Հայաստանի արդյունաբերությունը արագ տեմպերով զարգանում է։ 1944 թվին մեր շատ արդյունաբերական ձեռնարկություններ կատարեցին և գերակատարեցին իրենց արտադրական պլանները։ Այժմ ամբողջ ռեսպուբլիկայով մեկ լայն ծավալ է ստացել Հայաստանում սովետական իշխանության հաստատման 25-ամյակի կապակցությամբ սոցիալիստական մրցությունը, որի առաջին արդյունքներն արդեն երևում են մի շարք ձեռնարկությունների ցուցանիշներում։

Խոշոր նվաճումներով են դիմավորում մայիսի մեկը Հայաստանի կոլխոզնիկները և սովխոզների աշխատավորները։ Անասնա-

պահության բնագավառում ձեռք բերած հաջողությունների համար Հայկական Ռեսպուբլիկան ստացավ Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը։

Այս տարի Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը երկրորդ անգամ ստացավ Ստեփանավանի շրջանը։ ՍՍՌՄ Ժողկոմսովետը իր որոշմամբ նշեց բերքատվության բարձրացման բնագավառում Հայաստանի կոլխոզների նվաճումները։ Բերքատվության բարձրացմանը զուգընթաց, Հայաստանի կոլխոզները անցյալ տարի զգալի չափով ընդարձակեցին նաև ցանքերի տարածությունը, անցկացրին նոր ոռոգիչ ջրանցքներ, ավելացրին անասունների գլխաքանակը։ Հայրենական պատերազմի տարիներին Հայաստանի կոլխոզներում խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը ավելացավ 5,7 տոկոսով, իսկ ոչխարների և այծերի գլխաքանակը՝ 23,1 տոկոսով։ Հայաստանի կոլխոզնիկների հայրենասիրության վառ ցուցադրումը հանդիսացավ 1944 թ. հացամթերումների և պետական մյուս պարտավորությունների ժամկետից շուտ կատարելը։ Զբավարարվելով հացամթերումների կատարմամբ, կոլ-



խոզներն ու կոլխոզնիկները լրացուցիչ կերպով Կարմիր Բանակի ֆոնդին հանձնեցին 200 հազար փութ հացահատիկ։ Հացամթերումները ժամկետին և լրիվ կատարելու համար սովետական կառավարությունը Հայաստանի պարտիական ու սովետական շատ ղեկավար աշխատողների պարգևատրեց Հայրենական պատերազմի 1-ին և 2-րդ աստիճանի շքանշաններով։

Հայաստանի բանվորները, գյուղացիներն ու ինտելիգենցիան կանեն ամեն ինչ ավելի ևս բարձրացնելու համար սովետական երկրի տնտեսական ու ռազմական հզորությունը՝ ատելի ֆաշիզմի դեմ վերջնական հաղթանակ տանելու համար։

Հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող պատերազմում ազատասեր ժողովուրդների ավանգարդում քայլում է Սովետական Միությունը։ Հիտլերիզմի ջախջախման գործում ամենամեծ ավանդը մուծեց սովետական ժողովուրդը։ Սովետական ժողովուրդն իր հերոսական պայքարով ազատագրման հույս ներշնչեց Եվրոպայի ստրկացված ժողովուրդներին։ Աշխարհի վրա կախված մահացու վտանգը վերացվեց առաջին հերթին Կարմիր Բանակի ջանքերի շնորհիվ։

«Այժմ ամենքը խոստովանում են, որ սո-

վետական ժողովուրդը իր անձնազոհ պայքարով Եվրոպայի քաղաքակրթությունը փրկեց ֆաշիստական ջարդարարներից։ Այդ է սովետական ժողովրդի մեծ ծառայությունը մարդկության պատմության առաջ» (Ի. ՍՏԱԼԻՆ)։

ՍՍՌՄ-ն այն հիմնական ուժն է, առանց որի անհնարին է հաղթանակը ֆաշիզմի սև ուժերի դեմ, որովհետև նա հանդիսանում է սոցիալիստական հզոր տերություն, աշխարհում ամենահետևողական, ամենաառաջադեմ դեմոկրատիայի երկիր, որտեղ իշխում է ամենաառաջավոր իդեոլոգիան։

Ահա թե ինչու Սովետական Միությունը հանդիսանում է ֆաշիզմի ամենավճռական թշնամին, ազատության, դեմոկրատիայի, կուլտուրայի և առաջադիմության հենարանը։ Կարմիր Բանակը պաշտպանում է ոչ միայն սովետական ժողովրդի, այլև ամբողջ աշխարհի ժողովուրդների արմատական շահերը։

Ֆաշիզմի կողմից ստրկացված ժողովուրդները Կարմիր Բանակի վրա նայում են իբրև իրենց ազատարարի։ Կարմիր Բանակի ձեռքով գերմանա-ֆաշիստական հորդաներից ազատագրված երկրներում ստեղծված են բարենպաստ պայմաններ դեմոկրատական շարժման լայն զարգացման համար։ Այդ երկրներում ժողովուրդը իր բախտի տերն է դարձել, սկսվել է լայն շարժում հասարակարգի դեմոկրատացման, ֆաշիստական տիրապետության մնացորդների իսպառ լիկվիդացման, պատերազմի մեղավորներին և դավաճաններին խստորեն պատժելու համար։ Կարմիր Բանակի հաղթանակները հնարավորություն տվին ոչ միայն մեզ դաշնակից սլավոնական երկրներին ազատ և անկախ զարգանալու, այլև այն երկրներին, որոնք իրենց դավաճան կառավարությունների կողմից թշնամու լագերն էին նետվել։

Ֆաշիստական ստրկությունից ազատագրված և ազատագրվող ժողովուրդները լցված են անհուն երախտապարտությամբ դեպի իրենց ազատարար Սովետական Միությունը, Կարմիր Բանակը և սովետական երկրի մեծ առաջնորդ ընկեր Ստալինը։

Պատերազմի ավարտական փուլում Սովետական Միությունը հանդես է գալիս ավելի ևս ամրապնդված և հզոր։ Ավելի ևս ընդլայնվել են նրա միջազգային կապերը և անասհման աճել միջազգային հեղինակությունը։ Ամբողջ աշխարհը տեսավ և հա-

մոզվեց, որ առանց Սովետական Միության անհնարին է ջախջախել ֆաշիզմը, ինչպես և առանց Սովետական Միության ավանգարդային դերի անհնարին է հաստատել տևական և կայուն խաղաղություն։ Ետպատերազմյան շրջանում խաղաղության և անվտանգության գործը կազմակերպելու համար միակ միջոցն է իրականացնել այն, ինչին հաստատակամորեն ձգտում է Սովետական Միությունը, որպես աշխարհիս ամենադեմոկրատական և առաջադիմական երկիրը— խսպառ ոչնչացնել ֆաշիզմը երկրի երեսից, արմատախիլ անել նրան և նրան սնող պայմանները, հաստատել լիակատար դեմոկրատիա, անողոքաբար պատժել պատերազմի բոլոր հրձիգներին, ամրապնդել ֆաշիզմի դեմ միավորված ժողովուրդների փոխադարձ համագործակցությունը պատերազմից հետո ևս։

Սովետական Միության այս հետևողական քաղաքականությունը աջակցություն է գտնում բոլոր դեմոկրատական երկրների լայն հասարակայնության կողմից։ Կայուն խաղաղության և ընդհանուր անվտանգության կազմակերպման գործում վճռական նշանակություն ունի Սովետական Միության և իր հարևան սլավոնական մի շարք պետու-



թյունների հետ բարեկամության և փոխադարձ օգնության պայմանագրերի կնքումը։ Պատմական փորձը ամբողջովին համոզում է, որ գերմանական իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականությունը միշտ էլ նպատակ է դրել ստրկացնել սլավոնական ժողովուրդներին։ Հայտնի է, որ ֆաշիստական ճիվաղները այժմ էլ իրենց բոլոր ջանքերը գործադրում են, որպեսզի նախապատրաստեն նոր պատերազմ։ Ապագայում գերմանական ագրեսիան կանխելու և բնում խեղդելու համար կարևոր միջոց է հանդիսանում սլավոնական երկրների սերտ համագործակցությունը Սովետական մեծ Միության հետ, որն իր հզորությամբ ընդունակ է պաշտպանելու այդ երկրները գերմանական իմպերիալիզմի ոտնձգություններից և ապահովելու նրանց անկախությունը և տնտեսական ու կուլտուրական վերելքը։

Այս տեսակետից բացառիկ նշանակություն ունեն ՍՍՌՄ-ի և Հարավսլավիայի միջև բարեկամության, փոխադարձ օգնության և ետպատերազմյան համագործակցության պայմանագրի ստորագրումը, որ տեղի ունեցավ Մոսկվայում 1945 թ. ապրիլի 11-ին և ապրիլի 21-ին կնքված սովետա-լեհական պայմանագիրը՝ բարեկամության, փոխա-

դարձ օգնության և ետպատերազմյան համագործակցության մասին։

Այս պայմանագրերը նոր կարևոր քայլ են սովետա-հարավսլավյան և սովետա-լեհական բարեկամության զարգացման գործում, մի բարեկամություն, որ կոփվել է հիտլերյան Գերմանիայի դեմ մղվող ազատագրական մեծ պայքարի կրակի մեջ և նպաստում է բարեկամական հարաբերությունների ամրապնդմանը աշխարհի բոլոր դեմոկրատական երկրների միջև։

Սովետա-հարավսլավյան պայմանագրի կնքումը խոր գոհունակությամբ ընդունվեց ինչպես մեր երկրի ժողովուրդների, այնպես և հարավսլավյան ժողովուրդների և բոլոր դեմոկրատական երկրների ազատասեր ժողովուրդների կողմից։ Այն լայն արձագանք գտավ ազատագրված նոր Լեհաստանում։ Լեհ ժողովուրդը բազմաթիվ միտինգներում իր կամքն արտահայտեց նման պայմանագրի կնքման անհրաժեշտության մասին նաև Լեհաստանի և Սովետական Միության միջև։

Հարավսլավիայի ժողովրդական հերոս, մինիստրների խորհրդի նախագահ մարշալ Իոսիպ Բրոզ-Տիտոն սովետա-հարավսլավյան պայմանագրի ստորագրման առթիվ ար-



տասանած իր ճառում ասաց. «Այս պայմանագիրը Հարավսլավիայի ժողովուրդների ամենավաղեմի ձգտումների կատարումն է՝ սերտ բարեկամությամբ ապրել Սովետական մեծ ժողովրդի հետ, որը հանճարեղ առաջնորդ Ստալինի ղեկավարությամբ, պատմության մեջ այս ամենածանր պայքարում, գերմարդկային զոհեր տվեց հանուն համթանակի՝ ազատասեր ժողովուրդների ազատության ու անկախության և, առաջին հերթին հանուն Հարավսլավիայի ազատության ու անկախության»։

Բարեկամության, փոխադարձ օգնության և ետպատերազմյան համագործակցության պայմանագրի ստորագրումը Սովետական Միության և Լեհական Ռեսպուբլիկայի միջև արմատական բեկում է նշանավորում Սովետական Միության և Լեհաստանի հարաբերությունների մեջ հօգուտ դաշինքի և բարեկամության, նա լիկվիդացնում է Գերմանիայի և Սովետական Միության միջև խաղի հին և կործանարար քաղաքականությունը, որ վարում էին Լեհաստանի հին, ռեակցիոն կառավարողները, նա «հանդիսանում է դեմոկրատական նոր Լեհաստանի անկախության երաշխիքը, նրա հզորու-

թյան, նրա բարգավաճման երաշխիքը»
(Ի. ՍՏԱԼԻՆ)։

Այդ պայմանագիրը ավելի ևս ամրապնդում է Միավորված Ազգերի միասնական ճակատը ընդդեմ ընդհանուր թշնամու՝ Եվրոպայում։

«Այժմ,— ասաց ընկեր Ստալինը իր ճառում՝ սովետա-լեհական պայմանագիրը ստորագրելիս,— մեր երկրների միջև Բալթիկայից մինչև Կարպատները միասնական ճակատ կա ընդհանուր թշնամու դեմ, գերմանական իմպերիալիզմի դեմ։ Այժմ վստահ կարելի է ասել, որ գերմանական ագրեսիան պաշարված է արևելքից։ Անտարակույս է, որ եթե այդ արևելքի պատնեշը լրացվի արևմուտքի պատնեշով, այսինքն մեր երկրների դաշինքով մեր արևմտյան դաշնակիցների հետ, ապա կարելի է համարձակ ասել, որ գերմանական ագրեսիան կսանձահարվի և նրան հեշտ չի լինի խրբախճանքներ կատարել»։

Սովետա-լեհական պայմանագիրը մեծագույն ցնծությամբ ընդունվեց սովետական և լեհ ժողովրդի կողմից։ Այն գոհունակությամբ ընդունեց ամբողջ ազատասեր մարդկությունը։

Հարավսլավիայի, Չեխոսլովակիայի, Լե-



հաստանի, Ֆրանսիայի, Բելգիայի և գերմանական զավթիչների կողմից ստրկացված մյուս երկրների ժողովուրդները 1945 թ. մայիսի 1-ը դիմավորում են նոր պայմաններում։ Գերմանական զավթիչների դեմ այդ ժողովուրդների մղած հերոսական ազատագրական պայքարը Կարմիր Բանակի և անգլո-ամերիկյան բանակների հաղթանակների շնորհիվ հաջողությամբ պսակվեց։

Ֆաշիստների նողկալի «նոր կարգը» Եվրոպայում կործանվեց։ Ֆաշիստական ըստրկության լուծը թոթափած ժողովուրդները մեծագույն ցնծության մեջ են։ Ժողովրդական մասսաները, որոնք ֆաշիզմի պատճառած ծանր տանջանքներից հետո ազատ շունչ են քաշել, ձեռք են բերել ազգային անկախություն, մեծագույն ակտիվությամբ, ոգևորությամբ իրենց ավանդն են մուծում հիտլերիզմի վերջնական ջախջախման մեծ պայքարի գործում։ Ժողովրդական մասսաները միասնական ճակատ են կազմել իրենց երկրների լիակատար դեմոկրատացման, ֆաշիզմի մնացորդների լիակատար ոչնչացման, պատերազմի մեղավորներին պատժելու համար։

Կարմիր Բանակը ջախջախեց հիտլերյան բլոկը և հնարավորություն տվեց այդ երկրների ժողովուրդներին ֆաշիստական Գերմանիայի դեմ ակտիվ պայքար մղելու միջոցով տեղ գրավել ազատասեր ժողովուրդների շարքում։ Բուլղարիայում, Ռումինիայում, Հունգարիայում, Ֆինլանդիայում,, Իտալիայում ժողովրդական մասսաները, լավ գիտակցելով իրենց պատասխանատվությունը երկրի ապագայի հանդեպ ձեռնարկեցին իրենց երկրների դեմոկրատացման, ֆաշիզմը արմատախիլ անելու կիզիչ պրոբլեմների իրականացմանը։ Ժողովրդական մասսաները, ազատվելով ֆաշիզմի լծից, ճաշակելով ազատություն և իրենց ազգային անկախության առաջին պտուղները, մեծ ցասումով պատժում են ֆաշիստական գործակալներին՝ իրենց անցյալ տանջանքների իսկական մեղավորներին։ Նրանք չեն թողնում ռեակցիային գլուխ բարձրացնել, բնում խեղդելով այդպիսի փորձերը։ Ռեակցիայի դեմ պայքարելու լավագույն օրինակներ են ցույց տալիս Բուլղարիայի, Ռումինիայի, Հունգարիայի ժողովուրդները։ Ռումինական ժողովուրդը ջախջախեց Ռադեսկուի, Մանիուի



ֆաշիստական կլիկին, որոնք փորձում էին վերականգնել հիտլերյան ռեժիմը Ռումինիայում և սպառնալից դրություն էին ստեղծել Կարմիր Բանակի թիկունքում։ Ռումինիայում ստեղծվեց նոր կառավարություն, որի խնդիրն է երկիրը տանել դեմոկրատացման ուղիով։ Մոտ է Հարավսլավիայի, Չեխոսլովակիայի, Ավստրիայի, Նորվեգիայի, Դանիայի, Հոլլանդիայի, Իտալիայի լիակատար ազատագրման ժամը ֆաշիստական լծից։ Կարմիր Բանակը և անգլո-ամերիկյան զորքերը արագընթաց առաջ են շարժվում Գերմանիայի տերիտորիայով իրար հանդիման։ Գերմանիան արդեն կորցրել է իր տերիտորիայի կեսից ավելին։ Կարմիր Բանակը մտել է ֆաշիստական ոճրագործների, գերմանական արյունարբու իմպերիալիստների գլխավոր բույնը՝ Բեռլինը և քաղաքը բոլոր կողմերից երկաթե օղակի մեջ է առնված։

Այն, ինչի մասին չորս տարի ազատասեր ժողովուրդները շարունակ երազում էին և տենչում, կատարվեց։ Արդար գործը լիակատար հաղթանակում է։ Հիտլերյան Գերմանիայի խորտակումն արդեն փաստ է։ Գերմանիան կորցրել է իր տերիտորիայի կեն-

սական կարևոր ռայոնները։ Նրա անտեսությունը փլչում է, բանակը՝ լքվում։ Գերմանական ժողովրդին ակնհայտ է դարձել Գերմանիայի պարտությունը։ Չնայած այս բոլորին, հիտլերականները հուսահատ փորձեր են անում երկարաձգելու իրենց ջախջախումը և խուսափելու արժանի հատուցումից։ Նրանք կատաղի կերպով դիմադրում են սովետա-գերմանական ռազմաճակատում, նորանոր ուժեր փոխադրելով արևմուտքից՝ անպաշտպան թողնելով արևմտյան ռազմաճակատը։ Անխուսափելի խորտակման դատապարտված հիտլերյան ավանտյուրիստները շարունակում են սփոփել իրենց այն սին հույսերով, թե վերջին րոպեին իրենց կփրկի դաշնակիցների միջև ենթադրվելիք տարաձայնությունները։ Գերմանական բանակի հիմնական ուժերը սովետա-գերմանական ռազմաճակատ փոխադրելով, հիտլերականները ձգտում են թերահավատություն սերմանել Միավորված Ազգերի լագերում, գժտություն առաջ բերել դաշնակիցների մեջ, իրենցից գոնե առժամանակ հեռացնել դաշնակից բանակների վերջին մահացու հարվածը։ Հիտլերյան դավադիրների այս պլանները անիրականանալի են։ Հակահիտլերյան կոալիցիան ստեղծվել և կոփվել է



ֆաշիստական Գերմանիայի դեմ մղվող պատերազմի բովում։ Միավորված Ազգերի հակասությունների պատրանքով խաղալու գերմանական շուլերների քարտերը մի անգամ չէ որ խփվել են։ Երեք մեծ տերությունների դաշինքը է՛լ ավելի է ամրապնդվել պատերազմի ավարտական փուլում։ Այդ դաշինքի ամրապնդման փայլուն ապացույցը երեք դաշնակից տերությունների՝ Սովետական Միության, Ամերիկայի Միացյալ Նահանգների և Մեծ Բրիտանիայի ղեկավարների Ղրիմի պատմական կոնֆերանսի որոշումներն են և այդ որոշումների կենսագործումը բացառիկ ճշգրտությամբ։ Ղրիմի կոնֆերանսում երեք տերությունների ղեկավարները նորից ընդգծեցին իրենց անշեղ վճիռը՝ կարճ ժամանակամիջոցում վերջնականապես ջախջախել նացիստական Գերմանիան և հիմնադրել խաղաղության և ետպատերազմյան անվտանգության հաստատուն շենքը։

Իրենց ժողովուրդների և բոլոր ազատասեր ժողովուրդների կամքն արտահայտելով, երեք դաշնակից տերությունների ղեկավարները Ղրիմի կոնֆերանսում հայտարարեցին.

«Մեր անսասան նպատակն է՝ ոչնչացնել

գերմանական միլիտարիզմը և նացիզմը և երաշխիքներ ստեղծել, որ Գերմանիան այլևս երբեք ի վիճակի չլինի խախտելու ամբողջ աշխարհի խաղաղությունը։ Մենք լի ենք վճռականությամբ՝ զինաթափելու և ցրելու գերմանական բոլոր զինված ուժերը, մեկ ընդմիշտ ոչնչացնելու գերմանական գլխավոր շտաբը, որը բազմիցս նպաստել է գերմանական միլիտարիզմի վերածնմանը, վերացնել կամ ոչնչացնել գերմանական ամբողջ սարքավորումը, լիկվիդացնել կամ վերահսկողության տակ առնել գերմանական ամբողջ արդյունաբերությունը, որը կարող էր օգտագործվել ռազմական արդյունաբերության համար, պատերազմի բոլոր հանցագործներին ենթարկել արդար ու արագ պատժի և նատուրայով գանձել գերմանացիների պատճառած ավերածությունների, վնասների հատուցումը, երկրի երեսից ջնջել նացիստական պարտիան, նացիստական օրենքները, կազմակերպությունները և հիմնարկությունները։ Գերմանական ժողովրդի հասարակական հաստատություններից, կուլտուրական և տնտեսական կյանքից վերացնել ամեն տեսակ նացիստական և միլիտարիստական ազդեցությունը և Գերմանիայի նկատմամբ ձեռք առնել այնպիսի



համատեղ այլ միջոցներ, որոնք կարող են անհրաժեշտ լինել ամբողջ աշխարհի ապագա խաղաղության և անվտանգության համար։ Մեր նպատակի մեջ չի մտնում գերմանական ժողովրդի ոչնչացումը։ Միայն այն ժամանակ, երբ նացիզմը և միլիտարիզմը արմատախիլ կարվեն, գերմանական ժողովրդի համար կլինի արժանավայել գոյության հույս և նրա համար տեղ՝ ազգերի համագործակցության մեջ»։

Ղրիմի կոնֆերանսն ընդունեց «Դեկլարացիա ազատագրված Եվրոպայի մասին» և քննարկեց Լեհաստանի, Հարավսլավիայի, Միավորված Ազգերի և այլ հարցեր։ Ազատագրված Եվրոպայի մասին դեկլարացիայում ասված է.

«Կարգ ու կանոնի հաստատումը Եվրոպայում և ազգային տնտեսական կյանքի վերակառուցումը պետք է ձեռք բերվի այնպիսի միջոցով, որ ազատագրված ժողովուրդներին թույլ կտա ոչնչացնելու նացիզմի ու ֆաշիզմի վերջին հետքերը և ստեղծելու դեմոկրատական հիմնարկություններ ըստ իրենց սեփական ընտրության»։ Ղրիմի կոնֆերանսի որոշումները ազատասեր ժողովուրդների կյանքում հանդիսացան կարևոր էտապ, թևավորեցին նրանց իրենց պայքարում

հիտլերյան Գերմանիայի լիակատար ջախջախման, հետպատերազմյան կայուն խաղաղություն հաստատելու համար։ Կոնֆերանսի որոշումները կրկին անգամ ընդգծեցին, որ անհրաժեշտ է պատերազմի ընթացքում երեք դաշնակից տերությունների միջև հաստատված համագործակցությունը և փոխադարձ ըմբռնումը շարունակել պահպանել և ուժեղացնել առաջիկա խաղաղության շրջանում ևս։ Միայն այդ հիման վրա կարելի է ապահովել տևական և կայուն խաղաղությունը և անվտանգությունը։ Ղրիմի կոնֆերանսի որոշումները քայլ առ քայլ կենսագործվում են կյանքում կոնֆերանսի մշակված ժամկետների համաձայն։

1945 թվի ապրիլի 25-ին Սան-Ֆրանցիսկոյում Ղրիմի կոնֆերանսի որոշման համաձայն սկսվեց Միավորված Ազգերի կոնֆերանսը, որը նախապատրաստելու է խաղաղության և անվտանգության պահպանման ընդհանուր միջազգային կազմակերպության կանոնադրությունը։ Այդ կոնֆերանսում Միավորված Ազգերը նորից կցուցաբերեն իրենց միասնությունը և վճռականությունը թշնամու դեմ լիակատար հաղթանակն ապահովելու գործում։

1945 թվի մայիսի 1-ը մենք դիմավորում



ենք հիտլերյան Գերմանիայի լիակատար ջախջախման նախօրյակին։ Դատապարտված թշնամին կատաղորեն դիմադրում է և ելք է փնտրում խուսափելու դաժան հատուցումից։

«Նա կառչում է և կկառչի պայքարի ամենածայրահեղ և ամենաստոր միջոցներից։ Դրա համար էլ պետք է հիշել, որ որքան ավելի մոտ է մեր հաղթանակը, այնքան ավելի բարձր պետք է լինի մեր զգաստությունը, այնքան ավելի ուժեղ պետք է լինեն մեր հարվածները թշնամուն» (Ի ՍՏԱԼԻՆ)։

Տեսնելով իրենց վերահաս ջախջախումը, հիտլերականները անցնում են հապճեպորեն ընդհատակյա գործունեության՝ ապագայում գերմանական ագրեսիան վերածնելու նպատակով։

Ընկեր Ստալինը 1944 թվի նոյեմբերի 6-ի իր զեկուցման մեջ զգուշացնում է, որ «գերմանական պարագլուխները արդեն այժմ պատրաստվում են նոր պատերազմի»։ Ընդհատակյա պայքարի անցնելու վերաբերյալ հիտլերականների նախապատրաստվելու առթիվ նախազգուշացում արել էր նաև Անգլիայի արտաքին գործերի մինիստր Իդենը՝ համայնքների պալատում։ Ս. թ. մարտի 30-ին ԱՄՆ-ի պետական դեպարտամենտը

հրապարակել էր հատուկ հայտարարություն, որի մեջ ասված է, որ «Դաշնակից երկրների կառավարությունների հավաքած հավաստի ինֆորմացիան պարզ ցույց է տալիս, որ նացիստական ռեժիմը մշակել է նացիստական դոկտրինների և տիրապետության պահպանման ետպատերազմյան մանրամասն պլաններ»: Հիտլերականները գործի են դնում իրենց տնտեսական միջազգային կապերը՝ մասնավորապես գործի դնելով այդ նպատակի համար գերմանական ֆինանսական և արդյունաբերական մագնատներին: Աչքի ընկնող հիտլերականները հապճեպորեն դիմակավորվում են՝ փոխելով անձնագրերը և բնակության վայրը, անցնում են այլ աշխատանքի: Էսէսականները հատուկ դպրոցներում պատրաստում են դիվերսանտներ, լրտեսներ, դեսանտայիններ: «Մենք լցված ենք վճռականությամբ ամեն ինչ նորից սկսելու»,— ասում է Գեբբելսը:

Նոր պատերազմի նախապատրաստման հիտլերյան պլանների մեջ աչքի ընկնող տեղ է հատկացվում այսպես կոչված, «չեզոք երկրներին», որոնց նացիստները ուզում են օգտագործել, որպես մի տերիտորիա գերմանական քողարկված ձեռնարկություններ ստեղծելու, ֆաշիստական քայքայիչ աշխա-



տանքի ապաստարան գտնելու համար: Այս առումով ֆաշիստական Գերմանիան մեծ տեղ է հատկացրել ֆաշիստական Իսպանիային, Արգենտինային, Շվեյցարիային և այլն:

Այս երկրների ֆաշիստական և պրոֆաշիստական կառավարությունները, ինչպես նաև դեմոկրատական երկրների մի շարք ռեակցիոն տարրերը բացարձակ կերպով հանդես են գալիս ֆաշիզմի քաղաքական և բարոյական-գաղափարական ջախջախման, իսպառ արմատահանման դեմ, որին վճռականորեն ձգտում են Միավորված Ազգերը: Զանազան երկրներում ռեակցիոն շրջանները, նրանց թվում և Վատիկանը, ոռք ու աղաղակ են բարձրացրել պատերազմի հանցավորներին պատժելու որոշման դեմ: Այսպես օրինակ, վերջերս թյուրքական «Թասֆիր» թերթուկը հանդես է գալիս հոդվածներով, որոնց մեջ դժգոհություն է հայտնում, որ պատերազմի հանցագործներին դատի են տալիս:

Ֆիննական «Վապաա պոխոլա» թերթը իրավացիորեն զայրանում է, որ Ֆինլանդիայում «դատապարտվածների մեջ չկա պատերազմի ոչ մի իսկական հանցավոր»: «Մենք չենք լսել,— գրում է թերթը,— որ

պատերազմի այնպիսի իսկական հանցավորներ, որպիսիք են Ռյուտին, Տանները, Լինկոմիսը, Կալլիոկոսին, Սալովաարան, Տուկիլուն, Ալտոնին և ուրիշները որևէ կերպ իրենց հնգամյա ոճրագործ գործունեության համար տուժեին»։

Ազատասեր ժողովուրդները նողկանքով են լցված դեպի ֆաշիզմի փաստաբանները։ Հաղթող ժողովուրդները կարող են և կջախջախեն նոր պատերազմի հրձիգների բոլոր պլանները։

Ազատասեր ժողովուրդները գտնվում են պատմական մեծ դեպքերի նախօրյակին։

Ավարտվում է հիտլերյան Գերմանայի ջախջախումը, լիակատար հաղթանակի ժամը խփում է։

Սովետական ժողովուրդը և նրա քաջարի Կարմիր Բանակը իրենց մեծ առաջնորդ Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի ղեկավարությամբ մինչև վերջ կատարում են իրենց պատմական միսիան՝ հիտլերյան ավազակային իմպերիալիզմի ջախջախման և կայուն խաղաղություն հաստատելու գործում։

Սովետական ժողովուրդը այս տարի, մայիսի 1-ի օրը դիմավորում է մեր քաջարի Կարմիր Բանակի աննախնթաց հաղթանակ-



ներով(*)։ Արյունարբու թշնամին իր վերջին հուսահատ ճիգերն է գործադրում անեղ դատաստանից խուսափելու համար, սակայն նրա օրերը հաշված են։ Սովետական ժողովուրդը, որ այնքան լավ է հասկացել պատմական իր մեծ դերը ազատության, մարդասիրության և կուլտուրայի մահացու թշնամիների դեմ մղված ահեղ գոտեմարտում, այսուհետև կաշխատի ավելի լավ և բազմապատկված եռանդով, դրանով իսկ արագացնելով մարդկության թշնամու պարտության ժամը։

Կեցցե՛ Մայիսի մեկը՝ աշխատանքի ու պայքարի միջազգային օրը։

Կեցցե՛ մեր պանծալի Կոմունիստական (բոլշևիկների) Պարտիան, մեր հաղթանակների ոգեշնչողն ու կազմակերպիչը։

Կեցցե՛ մեր բարեկամ և ուսուցիչ, մեր մեծ առաջնորդ ընկեր ՍՏԱԼԻՆԸ։

---

*) Զրույց և զեկուցում անցկացնող ագիտատորներն ու զեկուցողները պետք է հարցերը կապակցեն տվյալ ձեռնարկության կամ կոլխոզի առջև դրված խնդիրների հետ։

